թիւ պիտի ճշդեն բանակցութեանց եղանակը, Զոր-սերուխորհուրդին մէջ։ Այս առթիւ դիտել կը տրուի թէ Ֆրանսա տրամադիր է զիջումներ կատարելու՝ դիւրացնելու համար արեւմտեան եւ արեւելեան Գերմանիոյ միացումը. բայց չուզեր զոհել իր հիմնական տեսակէտը,— ժողովրդավար Գերմանիա մը՝ Դաշնակցային պետութիւններով։ Միեւնոյն ատեն երաշխաւորութիւններ պիտի պահանջէ, որպէսզի Խ. Միութիւնը նոր Գերմանիան չօգտագործէ, քանդելու համար Եւրոպական միութիւնը։

★ Անգլեւսաքսոն թերթերու հրատարակութեանց համաձայն, Մ. Նահանգները պատրաստ են համաձայնութեան մը յանգելու Խ. Միութեան հետ, հետեւեալ հիմերով.—

1.— Տնտեսապէս միացնել արեւմտեան եւ արեւելեան Գերմանիան.— 2. Հինգ տարի սահմանափակ թիւով ամերիկեան, ռուսական, անգլիական եւ ֆրանսական զօրամասեր պահել գրաւեալ շրջաններուն մէջ.— 3. Փոխադարձ իրաւունքներ արեւմտեան եւ խորհրդային շրջաններուն միջեւ։

★ Պերլինի խորհրդային շրջանին ոստիկանութիւնը արտօնեց որ արեւմտեան թաղամասերու բնակիչները ուտեստ գնեն եւ վերադառնան։ Կը նշանակէ թէ պաշարումը թուլցած է արդէն, պաշտօնական բարձումէն առաջ։

## «ՎԱՒԵՐԱՑՈՒՑԷՔ, ԵԹԷ ՈՉ ՊԱՏԵՐԱԶՄ...»

Պ. Ճէրըրտ, որ Պերլինի ամերիկ. դեսպան էր Ա. Մեծ պատերազմի նախօրեակին եւ գիրքմըն ալ գրած է Հայաշխին Սարսափներու մասին, զեկուցում տալով Ծերակոյտի արտաքին յարաբերութեանց յանձնաժողովին առջեւ, ազդարարեց թէ «պատերազմը պիտի պայթի մէկ տարիէն», եթէ չվաւերացնեն Ատլանտեանի դաշինքը։ Եւ շեշտեց.

— «Եթէ չվաւերացնէք դաշինքը եւ չվերադինէք արեւմտեան Եւրոպայի ազգերը, հետեւանքը պիտի ըլլայ պատերազմ, ժողովրդապետութեան ջնջում ամէն տեղ եւ համաշխարհային տիրապետութիւն ռուսական համայնավարութեան»։

★ ՄԱԿի քաղաքական յանձնաժողովի ուրբաթ օրուան նիստին մէջ, խորհրդային պատուիրակը, Պ. Կրոմիքօ, ծանրապէս ամբաստանեց արեւմտեան պետութիւնները, պնդելով թէ ուժ կուտան Ֆրանքոյի կառավարութեան, որպէսզի «Սպանիան ալ օգտագործեն ապագայ նախայարձակ պատերազմի մը ատեն»։ Այս առթիւ պատմեց թէ Անգլիա եւ Մ. Նահանգները Ֆրանքոյի կ՚օգնեն զէնքով, ինչպէս եւ քաղաքական եւ տնտեսական միջոցներով։ «Ֆրանքոյի Սպանիան նշանակալից տեղ մը կը գրաւէ ամերիկեան խմբակցութեան մէջ որ համաշխարհային տիրապետութեան կը ձգտի։ Ահագին պատրաստութիւններ կը տեսնուին, օդակայաններու ցանց մը հաստատելու համար Սպանիոյ եւ սպանիական Ափրիկէի մէջ»։

Օրակարգի խնդիրն էր՝ վերցնել Սպանիոյ դէմ հաստատուած սեղմումները, որոնք կը տեւեն 1946էն ի վեր։

### ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ՉԵԽԱԿԱՆ կառավարութիւնը կը հերքէ այն լուրերը թէ դիմում կատարած է Մ. Նահանգներուն, օգտուելու համար Մարշըլի ծրագրէն։

ԱՆՏՐԷ ԺԻՏ, որ 82 տարեկան է, հիւանդանոց փոխադրուեցաւ, հիւանդացած ըլլալով Նիսի մէջ։

ԱՒԵԼԻ ՔԱՆ ՄԷԿ ՄԻԼԻՈՆ իտալացի բանուորներ վերսկսան աշխատանքը, երկար գործադուլէ մը վերջ որ ջլատած էր երկրին տնտեսական կեանքը։

ՄՈՍԿՈՒԱՅԷՆ կը հեռագրեն թէ 20 միլիառ րուբլիի փոխառութիւնը, որ յայտարարուեցաւ Գշ. օր, 21ուկէս միլիառի հասած էր Եշ օր։

ՉԻՆԱՍՏԱՆԻ կարմիր բանակները վերսկսան զարնել Շանկայը, որ պաշարուած է շաբաթներէ ի վեր։

ԲՆԱԿԱՐԱՆԻ ՎԱՐՁՔԵՐՈՒ մասին վէճ ծագած ատեն, հաշտարար յանձնաժողով մը պիտի միջամտէ, համաձայնութիւն գոյացնելու համար տանտէրներուն եւ վարձակալներուն միջեւ։

ԵԳԻՊՏՈՍԻ խորհրդարանին նախագահը, Համիտ Կուտա պէյ, մահափորձի ենթարկուեցաւ ձեռնառումբով, երբ տուն կը վերադառնար, բայց կրցաւ ազատիլ։ Ահաբեկիչը, որ ձերբակալուած է, կը պատկանի Իսլամական Եղբայրութեան (արգիլուած)։

ՍԱԿԱՐԱՆ (Ուրբաթ).— Սթերլին 1097 (1105), տոլար 328.80 (372), Նափոլէոն 4310, զուից. ոսկի 4140, սթերլին 5010, տոլար (20) 20.520, ձոյլ ոսկի 607 հազար ֆրանք։

Ֆր. ԿԱՊՈՅՏ Խաչի Պանեօ Քաշանի մասնաճիւղը շնորհակալութեամբ ստացած է Տիկին Շնորհիկ Մխճեանէ հազար ֆրանք իր տղուն զինուորութենէ վերադարձին առթիւ։

## ԱՊՐԻԼ 11-24Ի ՍԳԱՏՕՆԸ

ՄԱՐՍԷՅԼԻ ՄԷՋ.— Նախաձեռնութեամբ Հ. Յ. Դ. Նոր Սերունդի Շրջ. վարչութեան, հովանաւորութեամբ Շրջ. կոմիտէի եւ մասնակցութեամբ Շրջ. ենթակոմիտէներու, Նոր Սերունդի 12 խումբերու, Ֆ. Հ. Կապոյտ Խաչի մասնաճիւղերու եւ Հայ Արենուշներու։

Այս կիրակի առաւօտեան ժամը 9.30ին, Cinéma Roxy, Rue Tapis Vert։

Կը նախագահէ ընկեր ՊԵՏՐՈՍԵԱՆ

Կը խօսին Ա. ՔԷՕՍԷԵԱՆ եւ ՇԱՒԱՐՇ ՆԱՐԴՈՒՆԻ

Մուտքը ազատ է։

## ՄԱՅԻՍ 28Ը ՓԱՐԻԶԻ ՄԷՋ

Կիրակի, 29 Մայիս, կէսօրէվերջ ժամը 3էն մինչեւ կէս գիշեր։

## ԿԱՊՈՅՏ ԽԱՉԻ ՕՐԸ

Կը տօնուի Փորթ տ՚Իթալիի մասնաճիւղին կողմէ։ Կիրակի 8 Մայիս, կէսօրէ վերջ ժամը 3էն 11։ Պէն Տուշի սրահը, Rue Jules Ferry, Petit Ivry։ métro Porte de Choisy։

Կը բանախօսէ Ֆ. Կ. Խ. ՇՐՋ. ՎԱՐՉՈՒԹԵԱՆ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՑԻՉԸ։

Գեղարուեստական խնամուած բաժին։

Մասնակցութեամբ համակիր երիտասարդներու եւ մասնաճիւղի դպրոցի աշակերտ - աշակերտուհիներու։

Կը ներկայացուի «ԳԼԽՈՒ ՓՈՐՁԱՆՔ» զաւեշտը, մէկ արար։

Եւրոպական պարերը կը սկսին ժամը 6ին, ղեկավարութեամբ Պ. Օնոսեանի նուագախումբին։ ԱԺԱՆ ԵՒ ԱՌԱՏ ՊՈՒՖԷ։

Մուտք 100 ֆրանք։

Ֆր. ԿԱՊՈՅՏ ԽԱՉԻ ՇՐՋ. ՎԱՐՉՈՒԹԵԱՆ

## ՑԵՐԵԿՈՅԹ-ՊԱՐԱՀԱՆԴԷՍԸ

Ի նպաստ իր ձեռնարկներուն, տեղի կ՚ունենայ, Կիրակի, Մայիս 22ին, ժամը 16 — 24, Cercle Militaire սրահին մէջ։

Գեղարուեստական խնամուած բաժին, պիւֆէ։

ՓԱՐԻԶԻ ՀԱՅՈՑ ԵԿԵՂԵՑՒՈՅ վարչութիւնը կը խնդրէ ծանուցանել թէ ՄԻՆՉԵՒ ՅՈՒԼԻՍ 10 ԵՐԿԱՐԱՁԳՈՒԱԾ Է Կրօնական Ընկերակցութեան անդամատետրերու բաշխման պայմանաժամը, որ կը լրանար Մայիս 8ին։



### ՄԵՐ ԲԱԺԱՆՈՐԴՆԵՐՈՒՆ Ւ ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐՈՒՆ

ՅԱՌԱՋի վերհրատարակման 5րդ տարեշրջանը սկսաւ Ապրիլ 8ին։ Կը խնդրենք փութացնել նոր բաժնեգինները եւ փակել հին հաշիւները։

ՎԱՐՉՈՒԹԻՒՆ

### ՑՈՒՑԱՏԵՏՐ

ՊԷԼՎԻԼԻ Հ. Յ. Դ. «Ռոստոմ» խումբի ժողովը՝ այս կիրակի առաւօտ ժամը 10ին, ծանօթ հաւաքատեղին։ Ներկայ պիտի ըլլայ «Եգիպտոսի» կոմիտէի ներկայացուցիչը։

ՍԱՐՍԷԼ - ԱՌՆՈՒՎԻԼԻ Վարդան ենթակոմիտէնդհ. ժողովը այս կիրակի կէսօրէ վերջ ժամը 3ին, Սարսէլի սովորական հաւաքատեղին։ Բոլոր ընկերներու ներկայութիւնը անհրաժեշտ է։

## ՀՕՏԱՐ ԸՆԿԵՐՎԱՐԱԿԱՆՆԵՐՈՒ ՀԱՆԴԷՍԸ

Այս կիրակի (8 Մայիս) ժամը 20.30ին, Sociétés Savantesի մէջ։

Կը մասնակցի նաեւ Հ. Յ. Դաշնակցութիւնը։




Imprimerie DER AGOPIAN, 17 Rue Damesme – (13)

La Gérant : A. NERCESSIAN

## Համաձայնութիւն Իտալական գաղթավայրերու մասին

ՄԱԿի Քաղաքական Յանձնաժողովը 16ի դէմ 34 ձայնով վաւերացուց անգլօ-իտալական համաձայնութիւնը՝ Իտալիոյ ափրիկ. գաղթավայրերու մասին: Դէմ քուէարկեցին արաբական պետութիւնները, Խ. Միութիւնը եւ իր արբանեակները: Եօթը ազգեր ձեռնպահ մնացին (Թուրքիա, Իսրայէլ, Զինաստան եւն.):

Ծրագիրը յանձնուեցաւ ընդհ. ժողովին, որուն վաւերացման համար անհրաժեշտ է 2/3ի մեծամասնութիւն մը, մինչդեռ Քաղաք. Յանձնաժողովին մէջ կը պահանջուի միայն պարզ մեծամասնութիւն:

Համաձայնութեան գլխաւոր կէտերն են.—

1.— Կիւրենեան պիտի դրուի միջազգային խնամակալութեան տակ, իբրեւ վարչական իշխանութիւն ընդունելով Մեծն Բրիտանիան:

2.— Ֆիզանը պիտի դրուի միջազգային խնամակալութեան տակ, իբրեւ վարչական իշխանութիւն ընդունելով Ֆրանսան:

3.— Տրիպոլիսը պիտի դրուի բրիտանական խնամակալութեան տակ մինչեւ 1951, յետոյ պիտի յանձնուի Իտալիոյ:

4.— Իտալական Սոմալին պիտի մնայ իտալական վարչութեան տակ, միջազգային հովանաւորութեամբ:

5.— Էրիթրէան պիտի կցուի Եթովպիոյ, բաց ի արեւմտեան նահանգէն:

Յանձնաժողովը մերժեց հաւաքական խնամակալութիւններ հաստատել իտալական գաղթավայրերուն վրայ, ինչպէս եւ Խ. Միութեան մէկ առաջարկը որ կը թելադրէր անկախութիւն տալ Էրիթրէայի եւ Լիբիոյ, հինգ տարի վերջը:

★ Ափրիկեան Տրիպոլսոյ Արաբները կը շարունակեն ցոյցեր կազմակերպել, բողոքելու համար այս համաձայնութեան դէմ: Ուրբաթ օր գործադուլ յայտարարուեցաւ եւ թափօրներ կազմուեցան փողոցներու մէջ:

### ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ԱՐԱԲՆԱՐԸ եւ ԻՍՐԱՅԷԼ կը շարունակեն իրենց բանակցութիւնները՝ Լոզանի մէջ, վերջնական հաշտութիւն կնքելու համար:

ՉԻՆԱՍՏԱՆԻ կարմիր բանակը գրաւեց Հանքէուն, ճարտարագործական ամենամեծ քաղաքը, որ 450 քիլոմեթր հեռու է Շանկայէն: Այս վերջին քաղաքը պաշարուած կը մնայ: Կարմիրները յաջողած են ճեղքել կարգ մը ամրութիւններ:

ՖՐԱՆՍԱԿԱՆ ԿԵՍԹԱՓՈՅԻ (Ավրնիւ Ֆօշ) անդամներուն դատավարութիւնը կը շարունակուի: Առջի օր ջախջախիչ վկայութիւններ տրուեցան երկու ամբաստանեալներու դէմ: Շաթոտէօնի «Շէ ժանին» ճաշարանին տնօրէնուհին, Տիկին Էրթէր պատմեց.— «Օր մը բոլոր յաճախորդները շարեցին, ձեռքերը վեր, հայելիներուն առջեւ: Ամուսինս փորձեց փախչիլ: Ետեւէն զարնելով սպաննեցին փողոցին մէջ: Յետոյ երբ վերադարձան, Լոնէ ըսաւ.— «Աչքդ լոյս, մարդդ սատկեցաւ»:

ԱՐԵՒԷՆ ԵԼԵԿՏՐԱԿԱՆՈՒԹԻՒՆ արտադրելու համար զննութիւններ կը կատարէ Ֆրանսացի գիտնական մը, Պրօֆ. Ֆելիքս Թրոմպ: Մինչեւ հիմա ձեռք բերուած արդիւնքը գոհացուցիչ կը համարուի:

### ՈՒՇԱԴՐՈՒԹԻՒՆ

Շուտով կը հրատարակուի Թ. ԳԱՌՆԻԿԻ նոր հրջանի երկերէն Ա. հատորը՝ ՀԱՅ ՄՏՔԻՆ ԹԱՓՈՐԸ: իբրեւ յիշատակարան հայ հանճարին եւ փառաբանութիւն Հայկ. վերածնունդին:

Գինին վրայ 25 % զեղչ ունենալու համար փափաքողները կրնան արձանագրուիլ նախապէս Մ. Պարսամեան եւ Հր. Սամուէլեան գրատուները, ինչպէս նաեւ հեղինակին մօտ, հետեւեալ հասցէին.— T. Karniguian, 13 rue Saint Sulpice, Paris (6):

Գինն է 100 ֆրանք: Զեղչով 75 ֆրանք:



## ՄԱՅԻՍ 28Ը ՓԱՐԻԶԻ ՄԷՋ

Կիրակի, 29 Մայիս, կէսօրէ վերջ ժամը 3էն մինչեւ կէս գիշեր:

★

ՄԱՐՍԷՅԼԻ ՄԷՋ

Մայիս 28ին, Շաբաթ գիշեր, Casa d'Italia:

★

ԼԻՈՆԻ ՄԷՋ

Մայիս 28ին, Շաբաթ երեկոյեան ժամը 8.30ին, Salle François Coppée, 8 rue Victorien Sardou:

Մանրամասնութիւնները մօտ օրէն:

★

ՎԱԼԱՆՍԻ ՄԷՋ.— Մայիս 28ին, շաբաթ երեկոյ, Salle des Fêtesի մէջ:

★

ՏԷՍԻՆԻ ՄԷՋ.— 29 Մայիս, կիրակի իրիկուն Հ. Յ. Դ. Տան մէջ:

★

ՎԻԷՆԻ ՄԷՋ, 29 Մայիս, կիրակի կէսօրէ վերջ Cercle Catholiqueի մէջ:

★

ՊԱՆԵԽՕ ՔԱՇԱՆԻ մէջ, Յունիս 12ին, նախաձեռնութեամբ Հ.Յ. Դ. «Արծիւ» ենթակոմիտէին:

★

ՓՈՆ ՏԸ ՇԷՐԻԻԻ մէջ Մայիս 29ին, կիրակի, ժամը 15ին, Hôtel de France:

★

ԱԼՖՈՐՎԻԼԻ ՄԷՋ.— Յունիս 5ին: Մանրամասնութիւնները յաջորդով:

ԻՍԻԻ ՄԷՋ.— Յունիս 11ին, շաբաթ գիշեր, Իսիի քաղաքապետարանին սրահը:

### Ա. ԱՀԱՐՈՆԵԱՆԻ ՅԻՇԱՏԱԿԻՆ

ՄԱՀՈՒԱՆ ԱՌԱՋԻՆ ՏԱՐԵԼԻՑԻՆ ԱՌԹԻՒ

Հ. Յ. Դ. Եգիպտացի կոմիտէն, Այրի Տիկին Նուարդ Ահարոնեան եւ ամբողջ Ահարոնեան ընտանիքը կը ծանուցանեն թէ այս կիրակի Փարիզի Հայոց եկեղեցիին մէջ հոգեհանգիստ կը կատարուի ողբացեալ Մեծ հայրենասէրին մահուան առաջին տարելիցին առթիւ:

### ՑՈՒՇԱՏԵՏՐ

ԱՆԻԷԻ ՊՈԽԱ ՔՈԼՈՄՊԻ Հ. Յ. Դ. Արամ ենթակոմիտէի ընդհ. ժողովը այս Չորեքշաբթի, ժամը 21ին, ընկերվարականներու սրահը:

ՄԱՐՍԷՅԼԻ Հայ Գերիներու Միութեան ընդհ. ժողովը 22 Մայիս, կիրակի առաւօտ ժամը 9.30ին, 1 Bld. Dugommier «Au Club» des Prisonniers de Guerre:

### Վասպուրականի յաղթական հերոսամարտի 34րդ տարեդարձը

Նախաձեռնութեամբ Վասպուրականի Հայր. Միութեան, Մարսէյլի մէջ 15 Մայիս, կիրակի կէսօրէ յետոյ ժամը 3էն մինչեւ կէս գիշեր, Սալ Մազընոյի մէջ:

### ԿԱՊՈՅՏ ԽԱՉԻ ՕՐԸ

ՓԱՐԻԶԻ մասնաճիւղը կը տօնէ Մայիս 15ին, ժամը 3—7, SALLE IENAյի մէջ 9 Ave. d'Iéna:

★

ԻՍԻԻ ՄԱՍՆԱՃԻՒՂԸ կը տօնէ Կիրակի 15 Մայիս ժամը ճիշդ 3ին ԽՐԻՄԵԱՆ սրահին մէջ:

### ՀԱՅ ԵՐԳԻ ՕՐԸ ԼԻՈՆԻ ՄԷՋ

Կիրակի 12 Յունիս Salle Rameau, ՄԱՐՍԻԼԻՈՅ «ԱՐՄԵՆԻԱ» երգչախումբը (70 հոգի):

Ղեկավար Վ. ՍԱՐԳԻՍԵԱՆ

Մանրամասնութիւնները յաջորդով:

### ՊԱՏԱՐԱԳ - ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

ՄԱՐՍԷՅԼ.— Տէր եւ Տիկին Աստիկ եւ Մանիկ Աչճեան կը յայտարարեն իրենց ազգականներուն եւ բարեկամներուն թէ այս կիրակի Սէն Լուի Ս. Գէորգ եկեղեցւոյ մէջ կը կատարուի պատարագ եւ հոգեհանգիստ ի յիշատակ իրենց գերդաստաններուն եւ տարաբախտ վաղամեռիկ Տէր ԵՒ ՏԻԿԻՆ ԵՐՈՒԱՆԴ եւ ՈՎՍԱՆՆԱ ԻՆՃԻԵԱՆՆԵՐՈՒ (քենակալ եւ քենի): Կը հրաւիրուին հանգուցեալներու յիշատակը յարգողները:

## ՖՐ. Կ. ԽԱՉԻ ԾՐՋ. ՎԱՐՉՈՒԹԵԱՆ ՑԵՐԵԿՈՅԹ-ՊԱՐԱՀԱՆԴԷՍԸ

Մայիս 22ին կիրակի ժամը 16—24, Cercle Militaireի մէջ, 8 Place St. Augustin (Métro St. Augustin)

ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ ԽՆԱՄՈՒԱԾ ԲԱԺԻՆ.—Կ'երգեն Օր. ՍԱՌԱ ՔԷՕՍԷԵԱՆ եւ Mlle GALLY:

Դաշնակով կ'ընկերանայ իրենց ուսուցչուհին Օր. ՄԱՐԳԱՐԻՏ ԲԱԲԱՅԵԱՆ, Պ. ԽԱՉԻԿԵԱՆ (Պարիթօն), թէնոր Պ. ՄԱՆՈՒԷԼԵԱՆ (առաջին անգամ Փարիզի մէջ):

Կ'ԱՐՏԱՍԱՆԵՆ.— Օր. Հ. ԽԸՏՇԵԱՆ եւ Օր. Ա. ԳԵՒՈՆԵԱՆ, Օր. Հ. ԱՎՆԱԹԱՄԵԱՆի աշակերտներուն դասական պալէն:

Գեղարուեստական բաժինը ճիշդ ժամը 4ին:

ՃՈԽ ՊՈՒՖԷ

ՄՈՒՏՔԸ 300 ՖՐԱՆՔ

Սեղանները նախապէս ապահովելու համար հեռաձայնել Tru. 27 - 35:

ՆՈՒԷՐ.— Մարսէյլէն ընկեր Աստիկ Աչճեան իր հանգուցեալներու յիշատակին կը նուիրէ «Յառաջ»ի 1000 եւ Հ. Յ. Դ. Վեթ. Ֆոնտին 2000 ֆր.: Ստանալ «Յառաջ»էն:

MOTO - CROSSի մրցումներ այսօր, կիրակի, ժամը 14էն սկսեալ, Buttes de Montreuil, մասնակցութեամբ ֆրանսացի, անգլիացի, պելժիացի, իտալացի հեծելանուորդներու: Մուտք 150 ֆր.:



### Գործաւոր կ'ուզուի

ԴԵՐՁԱԿԻ ՔՈՎ աշխատելու համար գործաւոր մը կ'ուզուի: Դիմել Տէր Յարութիւնեանի, 8 rue Maréchal Maison. Epinay s/Seine:



Imprimerie DER AGOPIAN, 17 Rue Damesme - (13)

La Gérant : A. NERCESSIAN

